Թիւնը ուղղելէ յետոյ։ Խռովութեանց լուրերը տարածուած ըլլալով դէպքերը վերսկսան ուրիշ քաղաքներու մէջ ալ, մասնաւորապէս Հալէպի եւ Դամասկոսի մէջ։ Կիրքերը այնքան լարուած էին այս վերջին քաղաքին մէջ որ, ազգ. հիւանդանոցին բժիշկները, հիւանդապահները եւ օգնականները ձերբակալուեցան, որովհետեւ երեսի վրայ ձգած կամ մերժած էին դարմանել վիրաւոր ոստիկաններն ու զինուորները։

Դամասկոսի համալսարանին ուսուցչապետներէն երեքը պաշտօնանկ եղան։ Արդէն իսկ դատապարտուած են 278 ցուցարարներ, իսկ հարիւրաւորներ դատի կը սպասեն։ Կարգ մը կեդրոններու մէջ կիրքերը այնքան լարուած են որ, կառավարութիւնը հարկադրուեցաւ ուժերը ճամբել այն պաշտօնեաներուն որոնք չեն կրնար գնումներ կատարել արաբական խանութներու մէջ։

Երուսաղէմի Ֆրանսական հիւպատոսը յանձնարարած է Սուրիոյ մարզպանին, արգիլել Պաղեստինի արաբական օրաթերթերէն չորսը, որոնք հակաֆրանսական քարոզութիւններ կը կատարեն։

*** Ուրիշ հեռագիր մը հաստատելով այս տեղեկութիւնները, կ'ըսէ թէ ցուցարարները ջարդ ու փշուր ըրին ոչ-իսլամ խանութներու ապակեփեղկերը, իրենց գլուխն հաւաքելով կասկածելի տարրեր եւ խուժելով հարուստներու թաղերը։ Գործադուլը կը շարունակուի Հալէպի եւ Դամասկոսի եւ ուրիշ քաղաքներու մէջ։

*** Ուրբաթ գիշեր բողոքի ցոյց մը տեղի ունեցաւ Փարիզ, Միւթիւալիթէի մեծ սրահին մէջ, մասնակցութեամբ հազարներու բազմութեան մը։ Այս առթիւ ճառեր խօսեցան փաստաբան Գ. Պէրթօն եւ երեսփոխան Կապրիէլ Փէռի (համայնավար), իրենց կուսակցութեան ողջոյնը հաղորդելով Սուրիոյ աշխատաւորներուն։ Պահանջեցին վերահաստատել մամուլի եւ արհեստակցական ազատութիւնը, ընդհ. ներում հռչակել եւ ետ կանչել մարզպանը։ Խօսեցան ուրիշ ներկայացուցիչներ ալ եւ իվերջոյ բանաձեւ մը քուէարկուեցաւ, որ կ'ողջունէ Սուրիոյ ժողովուրդին անկախութեան պայքարը։

## Երեք խուլերնու դատավարութիւնը

Ուրբաթ օրուան նիստին մէջ, էքսի եղեռնադատ ատեանը լսեց երկու կարեւոր վկաներ, Զօր. Ժոռժ, որ վիրաւորուեցաւ ծանրապէս եւ գնդ. Փիօլէ, որ Աղեքսանդր Թագաւորին ինքնաշարժին կ'ընկերանար ձիով եւ սուրի հարուածով մը գետին փռեց ահաբեկիչը, Քէլէմէն։ Շատ խոր տպաւորութիւն ձգեց Զօր. Ժոռժի նկարագրութիւնը. այն ատենն որ, Թարգմանը, Օր. Տօրա Փոփովիչ, փղձկեցաւ եւ չկրցաւ շարունակել։ Հատուած մը իր նկարագրութենէն.

— «Մէկ երկվայրկեանի մէջ, ահռելի տեսիլք մը ունեցայ. առջեւս Թագաւորը կքած բարձին վրայ, աչքերը սեւեռած մէկ ուղղութեամբ. յետոյ ատդոյն եւ ծնօտը կծկուած մարդ մը, որ անդադար կը կրակէր։ Վրան խոյացայ, բայց կրակեց եւ զարնուեցայ կողէս, ուրիշ գնդակ մը դպաւ սրտիս մօտ։ Ցնցումին ուժգնութենէն կռնակիս վրայ ինկայ։ Երկու անգամ եւս զարնուեցայ թեւերէս։ Ատկէ անդին բան չեմ յիշեր, բայց քիչ յետոյ ըսթափեցայ սակարանին սանդուղներուն վրայ, ուր փոխադրուած էի»։

Զօրավարը պատասխանելով դատաւորներու հարցումներուն, պատմեց թէ Քէլէմէն կը կրակէր վարպետի ձեռքով մը, իբրեւ քաջավարժ այդպիսի գործերու։

Գնդ. Փիօլէի վկայութենէն վերջը, Ֆրանսացի Թղթակից մը, Լուսքօ, որ Սերպիա գտնուած է, ճառ մը կարդալ սկսաւ, բայց նախագահը կարգի հրաւիրեց, իսկ ամբաստանեալները գիտել տուին թէ ինչո՞ւ չի պատմեր Թատիչի եւ ուրիշ 5 խրուաթ երեսփոխաններու սպանութիւնը, խորհրդարանին մէջ ...

Արքայական ինքնաշարժին վարիչը, Ֆուսս, վկայութիւն տուած ատեն, ամբաստանեալ Փոսփիշիլ պոռաց.

— Ես ալ շարժավար եմ (շօֆէօր)։ Այս մարդը իր արհեստը չի գիտեր։ Եթէ այսինչ շարժումը կատարած ըլլար, սպանութիւնը երբեք չպիտի պատահէր։

Ամբաստանեալները ծաղրեցին նաեւ Եուկոսլավիոյ Ապահովութեան տեսուչը, Սիմոնովիչ, որ եկած էր վկայութիւն տալու։

Դեռ պիտի լսուին 30-35 վկաներ։ Ատեանը կը յուսայ դատավարութիւնը վերջացնել մինչեւ երկուշաբթի եւ իր վճիռն արձակել երեքշաբթի օր։

## Ճափոնական առշաւանք դէպի Մոնկոլիա

Ցարաբերութիւնները հետզհետէ կը լարուին Ճափոնի եւ Խ. Միութեան միջեւ։ Պաշտօնապէս կը հաստատուի թէ Ճափոնի եւ Մանչուրիոյ բանակները շարժումներ կը կատարեն դէպի Արտաքին Մոնկոլիա, որ կը գտնուի խորհրդային իշխանութեան տակ։ Ընդհարումները յաճախադէպ են սահմանին վրայ։ Ճափոնական իշխանութիւնները կը յայտարարեն.— «Զենք կրնար անշարժ մնալ խորհրդային եւ մոնկոլեան վերջին յարձակումներուն հանդէպ»։

Միեւնոյն աղբիւրէն կը հաղորդեն թէ 5000 մանչու զինուորներ ճամբայ ելած են դէպի Չինաստանի եւ Մոնկոլիոյ սահմանագլուխը։ Ճափոնական կառավարութիւնը ուղղակի կ'ամբաստանէ խորհրդային իշխանութիւնը։ Այս վերջինը սահմանամերձ շրջաններէն հեռացուց բոլոր օտար բնակիչները, հակառակ սաստիկ ցուրտին։

## ՁԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԳՈՐԾԱԶՈՒՐԿՆԵՐԸ իրենց բնակարաններէն չվտարելու համար, պատուիրակութիւն մը ներկայացաւ դատական նախարարին, նախագահութեամբ Մարսէլ Քաշէնի։ Նախարարը խոստացաւ դադրեցնել այդ կարգի վտարումները։

ՊԵԼԺԻԱ 4-6 ամիս պիտի աւելցնէ զինուորութեան շրջանը, ի նախատեսութիւն նոր վտանգներու։ Ընկերվարականներն ալ հաւանութիւն յայտնած են։

ՀՈԳԱՏԱՐՈՒԹԵԱՆՑ ՎԵՐԱՔՆՆՈՒԹԵԱՆ, ուրիշ խօսքով բազմամարդ երկիրներու գաղթավայր տալու խնդիրը օրակարգի անցած է Անգլիոյ մէջ, նախաձեռնութեամբ աշխատաւորական կուսակցութեան։ Խնդիրը նորէն պիտի արծարծուի Երեսփ. ժողովին մէջ։

ՔԱՐԻՒՂԻ ԱՐԳԵԼՔԻ խնդիրը, որ յանձնուած էր մասնագէտներու քննութեան, աննպաստ եզրակացութեան յանգած է։ Տեղեկագիրը կ'ըսէ թէ յունուար 17ին Իտալիա ունէր 82 քարիւղատար նաւեր, որոնց շնորհիւ կրնայ տարին 1,750,000 թոն քարիւղ փոխադրել Մ. Նահանգներէն։ Ուրիշ ազգի պատկանող նաւեր ալ կը բաւեն մէկ միլիոն թոն փոխադրելու։

Ի ՊԱՏԻՒ ԹՈՒՐՔԻՈՅ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԱՎԱՐ Թ. Ր. Արասի սեղան մը տրուեցաւ անցեալ օր, վարչապետ Գ. Սառոյի կողմէ։ Ներկայ էին բազմաթիւ երեւելիներ։



Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13)

*** Ուրբաթ օրուան խռովարկութեանց առթիւ, արքայական գործիչ մը, ժոռժ Շաֆիթ, 25 տարեկան, յանկարծ փողոց ննտուելով բիր մը քաշեց եւ երեք անգամ զարկաւ պահակ ոստիկանի մը: Ցեռոյ փախաւ, սակայն ձերբակալուեցաւ: Մանր – մունր ընդհարումներ անպակաս են փողոցներու մէջ, մանաւանդ ուսանողական (Սէն Միշէլ) եւ բանուորական թաղերու մէջ:

Ամէնէն չափաւոր թերթերն ալ դիտել կուտան թէ երկիրը կ'ապրի «քաղաքացիական պատերազմի մթնոլորտի մը մէջ» :

** Վարի նախանգապետը արգիլեց Աքսիոն Ֆրանսէզի մէկ ժողովը՝ Թուլոնի մէջ: Լուծման հրամանագրին գործադրութեան առթիւ դէպքեր պատահեցան Կրընօպլի մէջ, եւ շրջուն պահակները կրակ բացին: Քանի մը հոգի վիրաւորուեցան:

## Կը վախցուի որ պատերազմ ծագի
## Խ. Միութեան եւ Ճափոնի միջեւ

Քաղաքական շրջանակներու մէջ լուրջ մտահոգութիւն կը պատճառէ Ծայր. Արեւելքի կացութիւնը: Չորեքշաբթի օրուան դէպքը՝ Մանչուրիոյ եւ Արտաքին Մոնկոլիոյ սահմանին վրայ, որուն հետեւանքով 16 հոգի սպաննուեցան, Մանչուրիոյ կառավարութեան կողմէ կը համարուի «պատերազմ առանց յայտարարութեան»: Մանչուրիա եւ Ճափոն զինուորական փոխադրութիւններ կը կատարեն, օգտուելով այս դէպքէն: Չորեքշաբթի օրուան դէպքին մասնակցած են օդանաւեր եւ թնդանօթներ: Լուրի մը համաձայն, Մուքտէնի (Մանչուրիա) խորհրդային հիւպատոսարանը փակուած է եւ բոլոր հպատակները հեռանալու հրաման ստացած են: Ինչպէս միշտ, այս դէպքին առթիւ ալ երկու կառավարութիւնները իրարու վրայ կը ձգեն պատասխանատուութիւնը: Ուաշինկթընի մէջ անխուսափելի կը համարին պատերազմը, թէեւ այն համոզումը կը տիրէ թէ խորհրդային իշխանութիւնը կ'աշխատի խուսափիլ ընդհարումէ, իսկ Ճափոն ալ կ'ուզէ նախապէս ապահովել Գերմանիոյ զինուորական գործակցութիւնը:

### ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ԱՆԳԼԻՈՅ ԱԶԳ. ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ խնդիրը կարեւոր վիճաբանութեանց դուռ բացաւ Երեսփ. ժողովին մէջ: Այս՝ առթիւ նախկին նախարար Չէմպըլէն քննադատելով Պ. Պոլտուինի քաղաքականութիւնը, դիտել տուաւ թէ շատ մը սխալներ գործուած են: Իսկ ծովակալ մը ազդարարեց թէ Մեծն Բրիտանիոյ ծովեզերքը, Ճիպրալթար, Մալթա եւ ուրիշ կարեւոր կայաններ երբեք պաշտպանուած չեն օդանաւային ռմբակոծութեան դէմ: Կառավարութիւնը կ'ուզէ ազգ. պաշտպանութեան նախարարութիւն մը ստեղծել, բոլոր ճիգերը կեդրոնացնել եւ սպառազինութիւնները բազմապատկելու համար:*

*ԱԼԵՔՍԱՆԴՐ ԿՈՒՉԿՈՎ, նախկին Ռուսաստանի Տումային նախագահը, որ երկար ատենէ իվեր կը տառապէր սրտի հիւանդութենէ, մեռաւ Փարիզի մէջ: Ծնած էր 1862ին: Երիտասարդութեանը ճամբորդած է նաեւ Թուրքիա, հայկական ջարդերուն առթիւ: Համոզուած միապետական էր, եւ զինուորական նախարար՝ Կերենսկիի կառավարութեան մէջ: Ինքն էր որ 1917ին ուրիշ պաշտօնատարի մը հետ ցարին ներկայացաւ, հրաժարումը պահանջելու համար:*

*ԻՐԱՒԱԳԻՏԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՏԱԳՆԱՊԸ չէ լուծուած տակաւին: Վերատեսուչը պնդած ըլլալով իր հրաժարականին վրայ, կրթական նախարարը կը խորհի նոյն իսկ փակել համալսարանը, եթէ ուսանողները պիտի շարունակեն խափանել փրոֆ. Ժէզի դասախօսութիւնները:*

*ԱԼՊԱՆԻՈՅ ԿԻՆԵՐՆ ալ հրաման ստացան հանելու քօղերն ու «չարշաֆ»ները, համաձայն արքայական հրովարտակի մը:*





Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Dameseme, PARIS (13)

## ՀԱՅ ՄՏԱՒՈՐԱԿԱՆՆԵՐՈՒ ԱԿՈՒՄԲ

*Երեքշաբթի 18 փետրուար, երեկոյեան ժամը ճիշդ 9ին, Ռուսական Ֆօնսերվաթուարի շէնքին մէջ, 26 Ավընիւ տը Թօքիօ*

*Կը խօսի՝ Պ. Խ. ԳԱԲԻԿԵԱՆ*

Նիւթ.— Հայկական բարենորոգումներու հարցը Գերլինի վեհաժողովին մէջ, ըստ դիւանագիտական վաւերագիրներու:

*Սրահը կը բացուի ժամը 8.30ին:*

## ԳՐԱՒՈՒԱԾ ՕՐ

*Պանթէօ-Քոշանի Յառաջդիմասէր Միութիւնը Մարտ 15ին կը ներկայացնէ «Զարշըլը Արթին Աղան», ի նպաստ իր գիւղին:*

Նկատի ունենալ այդ թուականը:

## Երեկոյթ-Պարահանդէս

*Կազմակերպուած Տարօն-Տուրուբերանի Հ. Միութեան Ֆրանսայի շրջանի Կ. Վարչութեան եւ Փարիզի իր մասնաճիւղին կողմէ,*

*ի նպաստ Տարօն-Տուրուբերանի պատմութեան հրատարակութեան,*

փետր. 22, շաբաթ գիշեր, մինչեւ առաւօտ. Սալ Հօրթիքիւլթիւրի մէջ.

**84 Rue de Grenelle,** *մէթրօ* **Rue du Bac.**

*Կը նախագահէ ՏՔԹ. Ս. ՍԱՍՈՒՆԻ*

*Կը խօսին՝ ՊՊ. Ս. ՎՐԱՑԵԱՆ եւ Կ. Ց. ՊԱՍՄԱՃԵԱՆ*

Գեղարուեստական ճոխ բաժին: կէս գիշերէն վերջ հայկական եւ եւրոպական պարեր: կը նուագէ «Ժիրատ» նուագախումբը՝ ղեկավարութեամբ Պ. ՕՆՈՍԵԱՆի Ընտիր ճաշ եւ ճոխ պիւֆէ:

## ՏԱՐԵԿԱՆ ՀԱՆԴԷՍ

*Ֆ. Հ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱՆԿԷՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ*

23 փետր., կիրակի կէսօրէ վերջ. ժամը 2.30ին

Salle des Fêtesի մէջ, Անկէն, rue du Casino

Բացման խօսք.— *Վարչութիւն*

*Կը խօսին՝ Պ. Ա. ՏԷՐ-ԹՈՎՄԱՍԵԱՆ եւ Պ. Ս. ՍԱՍՈՒՆԻ (ֆրանսերէն)*

Գեղարուեստական ճոխ բաժին կը մասնակցին

*ԿՈՄԻՏԱՍ-ՍԻՓԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ*

Տիկ. Ա. ԳԻՒՈՆԵԱՆ (երգ) ընկերակցութեամբ Օր. ՃԱՄԳԱՃի (դաշնակ), Օր. Մ. Մ. ՐԳԱՐԵԱՆ (դաշնակ), Օր. Մ. ՊԱՊՕՆԵԱՆ (ջութակ), Օր. ՕՍՄԱՆՃԵԱՆ եւ Պ. Վ. ՄԱՆՈՒԿԵԱՆ (արտասանութիւն), Պ. Ե. ՍԷՄԼԻՐՃԵԱՆ (ֆրանս. արտասանութիւն):

Կը ներկայացուի՝ «ՎԱՐԴԱՆԱՆՑ»ի վերջին մասը, «Արաքս» միութեան սաներուն կողմէ:

Ա Աճալոնեանի «ԼԼ ՄԻ ԱՂՕԹԻՐ»ը խումբ մը սիրողներու կողմէ:

*Պարերը կը սկսին ժամը 6.30ին,*

*Ընտիր ճաշ, Պ. ՄԻՇԷԼ ՍԱՀԱԿԵԱՆ եւ իր նուագախումբը:*

*Ճոխ պիւֆէ:*

*ՄՈՒՏՔ ՄԵԾԵՐՈՒ ՀԱՄԱՐ 7 ՖՐԱՆՔ, ՓՈՔՐԵՐՈՒ 3 ՖՐԱՆՔ*

*ՀԱՂ. ՄԻՋՈՑ.— Կառ տիւ Նոռէն Անկէն մեկնող շոգեկառքերը, ժամը 2.5ին եւ 2.25ին:*

## Երեկոյթ-պարահանդէս

*Կազմակերպուած Վէնսէնի Հայ Կրթասիրաց եւ Դպրոցասէրի Տիկնանց Միացեալ Վարչութիւններու կողմէ*

*ի նպաստ Վէնսէնի Հայ Մանկապարտէզին*

տեղի կ'ունենայ 22 փետր. շաբաթ երեկոյ ժամը 9.30էն մինչեւ առաւօտ

Salle de Municipale, 47 rue des Laitière, Vincennes

Մէթրօ Tourelle

*Գեղարուեստական ճոխ բաժին, կէս գիշերէն վերջ կը սկսին պարերը:*

*Օրքեսթր Արժանթին — Ճոխ պիւֆէ — Մուտք 5 ֆրանք*

## Ցերեկոյթ-Պարահանդէս

*ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

ի նպաստ իր Օգնութեան Սնտուկին

*Հովանաւորութեամբ ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ*

*եւ նախագահութեամբ ՏԻԿԻՆ Ն. ԳԱԲԱՄԱՃԵԱՆի*

23 փետր. կիրակի, Aéro Club de Franceի սրահներուն մէջ,

6 rue Galilée — Métro Boissière

*Ճոխ պիւֆէ* — Orchestre — Jazz — Tango — *Գեղարուեստական բաժին — Գրիճի սեղաններ:*

Մուտք՝ 15 ֆրանք, ուսանողներու՝ 10 ֆրանք:

Հարկ եղաւ նիստը դադրեցնել։ Երեսփոխան մը հարցուց թէ գիւանը լսա՞ծ է վարչապետին վերագրուած բառը։ Դիւանը բացասական պատասխան տուաւ, բայց լողները պնդեցին։ Ֆրանքլէն Պույեօն յայտարարեց թէ բացատրութիւն պիտի պահանջէ։ Ցետոյ քուէարկութիւն կատարուելով, կառավարութիւնը վստահութեան քուէ չահեցաւ 151ի դէմ 380 ձայնով։

Կէսօրէն վերջը, Ֆրանքլէն Պույեօն նորէն արծարծեց նախատինքի խնդիրը եւ պահանջեց ատենագրութեան մէջ մտցնել արտասանուած բառը։ Այս անգամ վարչապետը բացակայ էր եւ իր փոխանորդը յայտարարեց թէ Պ. Սառօ չի յիշեր այդ բառը եւ թէ երբեք մտադրութիւն չունէր նախատելու Ֆրանքլէն Պույեօնը։ Նիստէն վերջը բարեկամներ միջամտեցին, որպէսզի միջադէպը փակուի։

## Պղպեղի հայ «թագաւոր»ը դատապարտուեցաւ

— • —

Փետրուար 21ին վերջացաւ պղպեղի հայ թագաւորին՝ Կարապետ Պէչիրճեանի եւ իր երկու անգլիացի ընկերներուն դէմ բացուած դատը, Լոնտոնի մէջ։ Մէկ տարի բանտարկութեան դատապարտուեցաւ Պէչիրճեան, մէկ տարի՝ Անգլիոյ «Թիթեղի Թագաւորը», Հօուըն եւ 9 ամիս՝ ուրիշ մեղսակից մը, Հարտի։ Երեքն ալ ամբաստանուած են թէ խաբեր են իրենց բաժնետէրերը, ամբողջ աշխարհի պղպեղը իրենց ափին մէջ կեդրոնացնելու համար։ Այս ձեռնարկին կորուստը եղած է 400,000 անգլ. ոսկի։ Դատապարտեալները կրնան վերաքննութեան դիմել։

Ինչպէս կը յիշեն ընթերցողները, Կարապետ Պէչիրճեան եւ իր գործակիցները ընկերութիւն մը կազմելով, փորձեր էին գնել աշխարհի ամբողջ պղպեղը եւ շահագործել։ Իրենց ծրագիրը ջուրը ինկաւ, երբ Ծայր. Արեւելքի արտադրիչները սկսան աւելի մեծ քանակութեամբ սպիտակ պղպեղ հանել սեւ պղպեղէն եւ ողողել հրապարակը, կործանելով նորակազմ ընկերութիւնը։ Պէչիրճեան բաւական հարստութիւն դիզած էր ժամանակին, բայց աւելի քան 100.000 անգլ. ոսկի կորսնցուց պղպեղի այս կարճատեւ «թագաւորութեան» շնորհիւ եւ այժմ սնանկ է։

ՁԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

300 ԻՏԱԼԱԿԱՆ ՕԴԱՆԱՒԵՐ հետազօտութիւններ կը կատարեն Օկատէնի ճակատին վրայ, ճամբան հարթելու համար դէպի Հարրար յառաջխաղացութեան։ Իսկ հիւսիսային ճակատին վրայ, իտալական բանակը հասած է Ատարաթ, որ միայն 15 մղոն հեռու է Ամպա Ալակիի կիրճէն։ Եթէ այս դիրքն ալ գրաւեն, մահացու հարուած մը կրած պիտի ըլլայ հապէշական բանակը, Տէսիէի ճակատին վրայ։

ՄԱՐՍԷՅԼԻ գործադուլի խնդիրը լուծելու համար, տեղին վրայ քննութիւն բացաւ Աշխատանքի նախարարը, Պ. Ֆրօսար։ Բանակցութիւնները շարունակուեցան երէկ ալ։ Եթէ յաջող ելքի մը չյանգին, հետեւանքը պիտի ըլլայ ընդհ. գործադուլ։

ՎԻՐՏԷՕՆԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻՆ քամանմեակը տօնուեցաւ մեծ հանդիսաւորութեամբ։ Մասնակցող ռազմիկները թափօր մը կազմելով, գացին Յաղթական Կամարին տակ, Անծանօթ Զինուորին դամբարանը, արծարծելու համար մշտավառ բոցը։



(Շար. Գ. էջէն)

Մարի «ցեղային աւանդութիւններու» վերադարձը կը հիմնէ բանասիրութեան եւ ստուգաբանական անակնկալներու վրայ։ Այնպէս որ իր քերթուածները կը նմանին, տեղ տեղ, գաւառական լեզուով գրուած բանաստեղծութիւններու։ Ահա թէ ինչու քննադատները կը հեգնեն կալլի-քան գարրոցին յաւակնութիւնները եւ ամանք, ծաղրանքի ձեւով, կը հարցնեն թէ նոր գպրոցը որ եւ է կապ չունի՞ արդեօք նման անունով մը ճանչցուած եկեղեցական կազմակերպութեան հետ, մինչ ուրիշներ կը յիշատակեն Վոլթէրի հեգնական ակնարկութիւնը այդ բառին մասին։

Ինչ որ ալ բսուի, Անտրէ Մարիի փորձը եթէ ժամանակավրէպ մը չէ, առնուազն անտարբերութեամբ պիտի դիմաւորուի. Ցեղային քաղաքական յաւակնութիւններու արձագանգ մըն է թերեւս այս ալ, սակայն մեռած լեզու մը կենդանացնելու փորձը չի կրնար շահիլ այն համակրութիւնը, զոր կը վայելէ մաքրարիւն աւանդութիւններու եւ փառքերու վերանորոգման վարդապետութիւնը։

## ՆՈՒԷՐԱՏՈՒՆՔ

ԼԸ ՓՐԷՕԶՕ, Թ. Տ.— 70։
ՔԼԵՐՄՈՆ ՖԷՐԱՆ, Թագ.— 280։
ՄՕՆ, Մառ.— 70։
ԼԱ ԹՐՈՆՇ, Օր. Հ. Մ.— 35։
ԱՐԼ, Կիւլ.— 35։
ԼԱ ԹՈՒՐ ՏԻՒ ՓԷՆ, Մկրտ. եղբ.— 175։
ԿԷՆԷՕ, Յով.— 105։
ՄԻՒՐԷ, Անդր.— 70։
ՎԻՎԻԷ, Պ. Ք.— 35։
ՆԱՆԹ, Գ. Ս.— 70։
ՆԻՍ, Բ. Գ.— 35։
ՍԷՆ ՔԼԷՐ ՏԸ ԼԱ ԹՈՒՐ, Սիմ.—100։
ՔՐԷՄԻԷՕ, Պալ. եղբ.— 50։
ԼԱ ԿՕՏԻՆԻԷՌ, Ն. Պ.— 270։
ԳՈՒՔՐԷՇ, Մամ.— 150.60։
ՖՐԷԺԻՒՍ, Ս. Բ.— 35.75։
ԳԱԹԱՎԻԱ, Մաք.— 100։ Ս. Վ.ի վճարեցինք 60։
ԼԱ ԹԱԼՕՏԻԷՐ, Պալոյ.— 35։
ՓԱՐԻԶ (18), Տօքթ. Հ. 50
ՍԷՆ ՔԼԷՐ, Մ. Տ.— 50
ՎԻԷՆ, Ն. Խ.— 405
ՍԱՐՍԷԼ, Պ. Ն.— 35։
ՌՕՄԱՆ, Գործ.— 115.20։
ՐԱԳԱԹ, Վ. Տ.— 100։
ՄՈՆԵԷՐԱՆ, Ազ.— 210։






Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13)

